





# ԱՄԱՌԸ ՎԱՆԱՁՈՐՈՒՄ

Վանաձորի ամառը գալիս է կարմիր փողկապավորների հետ: «Հայկական Արտեկ», «Շինարար», «Ծիծեռնակ» ու մյուս ճամբարները փռվել են գետափին ու լեռնալանջերին: Այստեղ հանգստանալու են գալիս Հայաստանի և Սովետական Միության տարբեր քաղաքների հազարավոր պիոներ-դպրոցականներ: Հանդիպումը սկսվում է երգով, իսկ բաժանումը՝ արցունքներով:

Հերթափոխի ընթացքում ճամբարականները տուրիստական արշավների են գնում Մայմեխի գագաթը: «Շինարար» ճամբարի տուրիստական ջոկատը լեռնային արահետներով մինչև Հանքավան հասավ: «Ծիծեռնակ»-ի ճամբարականները ավանդական հանդիպումներ են ունենում սարվորների հետ, նրանց համար զեկուցումներ են կարդում, հանդես են գալիս համերգներով:

Հանդիպումներով, զվարճալի խաղերով, էքսկուրսիաներով ու արշավներով հագեցված օրերը հաջորդում են իրար ու հերթափոխն ավարտվում է անխուսափելի հրաժեշտով:

«Հայկական Արտեկում» հերթափոխի վերջին օրն է: Մոսկվայից, Կազանից, Վիդնոյից, Թբիլիսիից և այլ քաղաքներից ճամբար եկած պիոներները մինչև հրաժեշտի տողանը հասցրել են մի անգամ ևս գետափ իջնել, անտառ մտնել, հասցրել են հասցեներ, կրծքանշաններ փոխանակել:

Լենան, այդ շուտ-շուտ արտասվող փոքրիկը, որ եկել է Մոսկվայի մարզից, հրաժեշտի տողանին նորից է արտասվում: Չի կարողանում իր խոսքն ավարտել ու ընկերուհուն է խնդրում.

— Լարիսա... դու ասա:

Եվ հուշում է.

— Ասա՝ Սևան և Դիլիջան կատարած էքսկուրսիաների մասին, տեսած գեղատեսիլ վայրերի, հին-հին վանքերի, բերդերի, զարդաքանդակների մասին, ջրկատավարների, հասակակից տղաների ու աղջիկների մասին, գիշերային արշավների ու խարույկների, աղմըկոտ երեկոների մասին:

— Մենք նորից կգա՞նք, անպայմա՛ն կգանք,— բացականչում է Լենան:

Պատվոգրերի ու հուշանվերների հանձնումը երկար է տևում, շատերն են ակտիվ մասնակցություն ցուցաբերել ճամբարում կազմակերպված միջոցառումներին: Հանդես են եկել հետաքրքիր նախաձեռնություններով: Արված ոչ մի լավ բան չի մոռացվել:

Վերջում բոլորը հրաժեշտի երգեր են երգում: Բաժանումը դժվար է: Մի քանի քայլ անելուց հետո նորից են ողջագուրվում:

— Ցտեսությո՜ւն, Վանաձո՛ր, ցտեսությո՜ւն, ճամբա՛ր, մենք նորի՜ց կգանք...

Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@







# ՄՏՐՈՒԿԸ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Ծաղկածորում էր: Մի առավոտ,
Պաղ գետի ափին այն քչքչան,
Ես տեսա հանկարծ ճամբարի մոտ
Մի փոքրիկ մտրուկ՝ ճակատը չալ:

Մայրն արածում էր ու անհանգիստ
Ճամբարի կողմն էր հաճախ նայում,
Իսկ մանուկները իր մտրուկին
Ջեռք էին տալիս ու փայփայում:

Մտերմացել էր մտրուկն այնքան,
Մշտական հյուրն էր նա ճամբարի,
Նա ճաշակում էր հաց ու շաքար
Ու չէր վախենում մանուկներից:

Տրտինգ էր տալիս ճամբարի մոտ,
Մանուկների հետ վազում անտառ,
Եվ արահետի խոտը շաղոտ
Փովում էր նրանց ոտքերի տակ:

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

# ԿԱՆՉՈՒՄ Է ՆՈՐԻՑ ԶԱՆԳԸ ԴՊՐՈՑԻ

ՊԻՈՆԵՐ

1 ՍԵՊՏԵՄԲԵՐ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

## ՎԵՐԱԴԱՐՁ

*ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*

Անցավ ամառը արևի շողով,
Վաղորդյան ցողով,
Զովով անտառի,
Ծաղկունքով սարի,
Արշավի երգով վաղ լուսաբացի,
Ուրախ ցոլքերով խարույկի բոցի,
Հավք-թռչունների դայլայլ ու կանչով,
Ծիր առվակների ուրախ կարկաչով...
Եվ պարգևեց մեզ նա զվարթություն,
Մեր մաշկը ներկեց շագանակագույն,
Պարգևեց նաև մեզ պիրկ մկաններ,
Կոփեց կամքը մեր։
Եվ ահա այսպես
Նա կրկին դպրոց ճանապարհեց մեզ։





841-73

7428-Աև

digitised by A.R.A.R.@



# «ՊԻՈՆԵՐ»-Ը ՀԻՍՈՒՆ ՏԱՐԵԿԱՆ Է

«Պիոներ» ամսագիրը բոլորեց իր գոյության հիսուն տարին:

Նրա առաջին համարը լույս է տեսել 1923 թ. մայիսին: Այն ժամանակ ամսագիրը կոչվում էր «Պատկոմ»: Պիոներական կազմակերպությունն էլ կոչվում էր պատկոմական (պատանի կոմունարների) կազմակերպություն:

«Պատկոմ»-ի աշխարհ գալու լուրն իմացվեց 1923 թ. «Խորհրդային Հայաստան» (այժմ՝ «Սովետական Հայաստան») թերթում տպագրված մի հաղորդագրությունից, ուր ասվում էր, թե այդ տարվա մարտ ամսից լույս է տեսնելու մանկա-պատանեկան պատկերազարդ ամսագիր՝ «Պատկոմ» անունով:

Սակայն ամսագիրը լույս չտեսավ խոստացված ամսին: Այն ժամանակվա պայմաններում հեշտ բան չէր գիրք, դասագիրք, թերթ կամ ամսագիր տպագրելը: Երեք տարի դեռ չկար, որ Հայաստանը խորհրդային էր դարձել, Սովետական Ռուսաստանի օգնությամբ ձեռք բերել անկախ գոյության իրավունք, բռնել խաղաղ, ապահով ու ստեղծարար աշխատանքի ուղի: Հայաստանում դեռ տիրում էր սովն ու աղքատությունը, հազարավոր գաղթական ընտանիքներ, որոնք դուրս էին քշվել իրենց ծննդավայրից, կորցրել տուն ու տեղ, անցել ջարդերի արհավիրքների միջով, դեռ օթևան չունեին, հազարավոր որբացած երեխաներ անապաստան վիճակում թափառում էին փողոցներում՝ անլվա, կիսամերկ, կիսաքաղց. եղած մանկատները չէին կարող նրանց բոլորին տեղ տալ: Թե ինչ վիճակ գոյություն ուներ այդ ժամանակ երկրում, իմանում ենք պատկոմի առաջին իսկ համարում տպագրված նյութերից, հենց առաջին համարում կարդում ենք սրտաճմլիկ մի կոչ՝ ուղղված բոլոր պատկոմներին, դպրոցականներին ու նրանց ծնողներին՝ օգնության ձեռք մեկնել անապաստան երեխաներին, կիսել նրանց հետ իրենց մի կտոր հացը, ապաստան տալ նրանց իրենց տներում:

Սակայն «Պատկոմ»-ի հենց առաջին համարում միաժամանակ պատկերված է հոգեկան այն մեծ վերելքը, որ ապրում՝ էր վերածնվող հայ ժողովուրդը. վերականգնվում էր երկրի քայքայված տնտեսությունը, պատկոմներն ու դպրոցականներն օգնում էին ծնողներին ու ավագ եղբայրներին՝ կառուցելու ճանապարհներ ու ջրանցքներ, օգնում էին չքավորներին՝ վարելու հողը, օգնում էին անաշխատունակ ծերերին, դպրոցամերձ այգիներ էին գցում, սովորում ագրոկանոններով մշակել հողը, պայքարում էին հնի, հետամնացության, կրոնական նախապաշարումների դեմ, իրենց մասնակցությունն էին բերում անգրագիտության վերացման գործին, որ ծավալվել էր երկրում: Քաղաքի պիոներները գյուղերն էին գնում՝ մարզահանդեսներ և ներկայացումներ տալու, զեկուցումներ կարդալու գյուղացիների համար՝ բնության երևույթների վերաբերյալ:

Ամսագիրն իր ընթերցողներին պատմում էր Հայաստանում, Սովետական Միությունում ու նաև կապիտալիստական երկրներում ծավալ-

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@

վող պիոներական շարժման մասին, գիտական նորություններ էր հաղորդում, պարբերաբար տպագրում բնագիտական զրույցներ, մաթեմատիկական խնդիրներ, խաղեր:

Իր առաջին համարի առաջնորդողում նա պարզ ու որոշ շարադրել է իր առջև դրված խնդիրները՝ հոգեկան սնունդ տալ իր պատանի ընթերցողներին, նպաստել նրանց դաստիարակության գործին, որպեսզի նրանք դառնան կրթված, բազմակողմանիորեն զարգացած քաղաքացիներ, դառնան արժանավոր փոխարինողներ կոմերիտմիության համար, լինեն հավատարիմ լենինյաններ և իրենց հերթին առաջ մղեն կոմունիզմի կառուցման վեհ գործը:

Անցել է հիսուն տարի:

Ամսագրի առաջին ընթերցողներն ու թղթակիցները հասակ են առել: Նրանցից շատերին մենք այսօր բոլորս ճանաչում ենք. ահա գիտական խմբակներին վերաբերվող մի հոդված, որի տակ ստորագրված է «Պատկոր Նագուշ» (պատանի թղթակիցներին կոչում էին «պատկոր»), պատանի Նագուշը դա հենց ինքը՝ ընկ. Նագուշ Հարությունյանն է, ականավոր գիտնական, ակադեմիկոս և մեր հանրապետության Գերագույն սովետի նախագահության նախագահը: Ամսագրի առաջին համարներում մենք հանդիպում ենք պատկոր Արմենակ Ծեկոյանի անվանը, որն հետո·երկար ժամանակ մեր հանրապետության ֆինանսների մինիստրն էր, իսկ այժմ պատասխանատու աշխատանք է կատարում մեր հանրապետության Մինիստրների սովետում: Պատկոր Սևակը, որ ամսագրում հանդես է եկել մի շարք պատմվածքներով, ճանաչված լեզվաբան, ակադեմիկոս Գուրգեն Սևակն է:

Մի պատանի որսորդ այդ տարիներից ամսագրում սկսեց տպագրել «Պատանի որսորդի հուշերը» վերնագրով պատմվածքներ: Ո՞վ կարող է լինել, եթե ոչ արդեն ալեզարդ, ճանաչված որսորդ, որսորդական պատմվածքների բազմաթիվ ժողովածուների հեղինակ, մեծահամբավ գրող, մեր սիրելի Վախթանգ Անանյանը:

Եվ այսպես. ընթերցողների ու թղթակիցների քանի՜-քանի սերունդ է ունեցել ամսագիրը, անցած 50 տարիների ընթացքում, որոնք ամսագրի էջերում իրենց հետքն են թողել, ամսագիրն էլ իր հերթին իր կնիքն է դրել նրանց հոգու և մտքի վրա: Մանկական գրողների քանի՜-քանի սերունդ է հանդես եկել ամսագրի էջերում, աճել ու հարստացրել մեր մանկական գրականությունը իր նոր և գեղեցիկ ստեղծագործություններով:

Անցած 50 տարիների ընթացքում հիմնովին փոխվել է մեր երկրի պատկերը, կյանքն ու կենցաղը, Հայաստանը Սովետական մեծ ու հզոր Միության ծաղկուն հանրապետություններից մեկն է դարձել: Այդ ընթացքում մեր ամսագրի տպաքանակը 1000-ից հասել է 170.000-ի («Ծիծեռնակ»-ի հետ միասին): Եկել է ամսագրի շուրջը համախմբված ընթերցողների ու աշխատակցողների նոր սերունդ, իր նոր ու բարձր մակարդակով, իր նոր ու բարձր պահանջներով:

Անփոփոխ է մնացել մի բան միայն՝ այն նպատակները, որ դրել է իր առջև ամսագիրը իր հիմնադրման օրվանից, այն է՝ արժանավոր ուղեկից հանդիսանալ իր ընթերցողների համար այն գեղեցիկ ճանապարհին, որ տանում է մեզ դեպի կոմունիզմ:

# «ՊԱՏԿՈՄԻ» ՆՊԱՏԱԿՆԵՐԸ

*Հին կարգերում ստրուկ էր աշխատավորը. նրա ոչ միայն աշխատանքն էր ծախված, այլև նրա միտքն ու հոգին ենթակա էին հարուստի շահագործությանը, բռնությանը: Իշխող դասակարգը մի շարք միջոցների էր դիմել աշխատավորների գիտակցությունը մթագնելու: Բանվորներին թույլ չէին տալիս ունենալ իրենց թերթը, գրականությունը, դպրոցը և դրա փոխարեն ստիպում էին կարդալ այն, ինչ հրատարակում էր իշխող դասակարգը, բացում էին այնպիսի դպրոցներ, որոնք աշխատավորների երեխաներին փոքր հասակից սովորեցնում էին հպատակ մնալ աշխարհիս «զոռբաներին»:*

*Այդ ժամանակվա մանկական-պատանեկական գրքերն ու թերթերը նույն նպատակն ունեին: Մենք մի կողմ ենք ձգում հին աշխարհի ստրկացման այդ զենքերը և ստեղծում ենք նոր, մեր՝ աշխատավորներիս պատանեկական և մանկական գիրքը, գրականությունը, դպրոցն ու կազմակերպությունը: Ահա այս պայմաններում ծնվում է այսօր բանվորա-գյուղացիական պատանիների անդրանիկ ամսագիրը՝ «Պատկոմը»:*

*Ի՞նչ է մեր ամսագրի նպատակը:*

*Նախ և առաջ պարզել մեր պատանի ընթերցողների համար մեր աչքի առաջ և մեզնից շատերի մասնակցությամբ կատարված բանվորների ու գյուղացիների հեղափոխության պատճառներն ու նշանակությունը: Միաժամանակ դաստիարակել աշխատավոր պատանեկության մեջ հեղափոխական բնավորություն, կամք և պատրաստակամություն՝ պաշտպանելու հեղափոխության դիրքերը:*

*«Պատկոմի» նպատակն է՝ ոչնչացնել մեր պատանեկության մեջ գոյություն ունեցող սնոտիապաշտությունը, կրոնական զանազան զառանցանքները, որ բուրժուական դասակարգը և նրա ծառա հոգևորականությունն են արմատացրել աշխատավորների մեջ: Դրա փոխարեն «Պատկոմը» տարածելու է գիտությունն իր բոլոր ճյուղերով՝ բնության (բույսերի, կենդանիների, մարդու, երկընքի և երկրի), մարդկային հասարակության պատմության, մարդու աշխատանքի ու նրա մեծ գյուտերի մասին է խոսելու «Պատկոմը» իր ընթերցողների հետ: Մարդկային աշխատանքի բոլոր ձևերին ծանոթացնելու է «Պատկոմը»: Տեղ է տրվելու մեր ամ-*

digitised by A.R.A.R.@

# Կյանքիս ուղեկիցը

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Մտերմացա քեզ հետ դեռ
Արշալույսին նոր կյանքի,
Երբ ցրվում էր մահաբեր
Մշուշը մեր գրկանքի:
Դու՝ մի մանուկ նորածին,
Ես՝ խեղճ որբուկ մի անտուն,
Թե առանք ու անեցինք
Նույն արևի տակ խնդուն:
Ո՜վ սիրեցինք մենք իրար,
Ո՜վ օգնեցինք մեկմեկու,
Ու կյանք առան լուսավառ
Երազները մեր հոգու:
Թոթովանքներս առաջին
Դու լույս աշխարհ հանեցիր,
Մենք միասին բարության
Լուսե սերմեր ցանեցինք:
Ա՛րդ, ես՝ մարող մի խարույկ,
Ես՝ վաստակած մի ճամփորդ,
Իսկ դու քայլո՛ւմ ես առույգ,
Հավերժական քո ճամփով:



սագրում գեղարվեստի բոլոր ճյուղերին, գեղեցիկ գրականության, երաժշտության, նկարչության, ճարտարապետության:

Այսպիսով «Պատկոմը» առաջ է քաշելու և զարգացնելու պատանեկության մեջ գեղարվեստական ճաշակ և ստեղծագործական ընդունակություններ:

Առանձին տեղ ենք տալու մանավանդ պատանի բանվորների և գյուղացիների կատարած աշխատանքներին, նրանց կազմակերպություններին մեր երկրում՝ Հայաստանում, մյուս խորհրդային երկրներում և բուրժուական երկրներում, ուր բանվոր պատանիները իրենց ծնողների հետ թևթևի տված կովի են մտած իրենց ճնշողների դեմ:

«Պատկոմը» ունի զվարճալիքների հատուկ բաժին, որով նպատակ ունի զարգացնելու ընթերցողների մեջ կայտառ տրամադրություն:

Բացի այս բոլորից «Պատկոմի» նպատակն է՝ պատկոմական կազմակերպության հետ միասին համախմբել ընթերցողներին իր շուրջը և լծվել այն շինարարական աշխատանքներին, որոնք կատարվում են այժմս մեր խորհրդային հայրենիքում: Մանավանդ մեծ է լինելու մեր գործը լուսավորության ասպարեզում. մեր ամսագիրը իր ընթերցողների հետ միասին մտնելու է դպրոց, գործարան, արհեստանոց և ամեն տեղ, ուր աշխատում են պատանիները, և նրանց կազմակերպելով, գրոհ է տալու անգրագիտության և խավարի վրա, որից այնքան տանջվել են բանվորն ու գյուղացին:

Ամեն մի ընթերցող պիտի մասնակցի «Պատկոմի» կյանքին. ամեն մեկը պիտի ուղարկե մեր ամսագրին իր հեղինակած բանաստեղծությունները, պատմվածքները, հանելուկները, խնդիրները, ռեբուսները, զեկույցներ պիտի ուղարկի իր կատարած բնագիտական փորձերի և դիտողությունների մասին. պիտի նկարագրի իրենց գործարանի, արհեստանոցի, դպրոցի, գյուղի կյանքը և հատկապես պիտի գրի պատանիների կատարած աշխատանքների մասին: Յուրաքանչյուր ընթերցող պիտի գրի իրեն հետաքրքրող հարցերի մասին, որպեսզի մեր «Պատկոմը» այդ հարցերին պատասխանի:

Մեր ամսագիրը առանձնապես զբաղվելու է պատկոմական կազմակերպության աշխատանքներով, ուստի և բոլոր պատկոմները պիտի աշխատակցեն մեր ամսագրին:

Այսպիսի վառ հույսերով ծնվում է «Պատկոմը» և մտնելով գործարան, դպրոց, գյուղն ու քաղաքը, կոչում է՝

«ՊԱՏԱՆԻ ԲԱՆՎՈՐՆԵՐ ԵՎ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐ. ՎԱՌԵՑԵ՛Ք ԳԻՏՈՒԹՅԱՆ ՋԱՀԵՐԸ ԵՎ ԿԱՆԳՆԵՑԵ՛Ք ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՊԱՀ ԴԻՐՔԵՐՈՒՄ»:

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

«Պատկոմ» 23 թ. № 1-ի առաջնորդողը

digitised by A.R.A.R.@



# Ողջույն քեզ,

ՆԱԳՈՒՇ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
*Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի*
*նախագահության նախագահ*



Պիոներ» ամսագիրը 50 տարեկան է:

Մի տարիք է դա, որին հասնելուց հետո սովորաբար մի հայացք է գցվում դեպի ետ, հանրագումարի բերելու կատարածն ու վաստակածը: Այս առումով «Պիոներ»-ը հպարտանալու շատ բան ունի: Լույս աշխարհ գալով հանրապետությունում սոցիալիստական շինարարության առաջին տարիներին, ամսագիրը դարձավ լենինյան պիոներիայի մարտական գաղափարախոսը, նրա ձգտումների, երազանքների ու խիզախումների շեփորահարը:

Ամսագիրը դաստիարակել է պիոներիայի բազմաթիվ սերունդներ, որոնք համալրել են լենինյան կոմերիտմիության շարքերը, ակտիվորեն մասնակցել մեր հայրենիքի վերածննդի մեծ գործին, ավագ սերնդի հետ կառուցել գործարաններ ու ֆաբրիկաներ, փորել ջրանցքներ, կերտել էլեկտրակայաններ, այգեստանների վերածել խոպան դաշտերը:

Իր 50-ամյակի առթիվ «Պիոներ» ամսագրին մաղթում եմ նորանոր հաջողություններ մեր մատաղ սերնդի դաստիարակման գործում:





## «ՊԻՈ՛ՆԵՐ»-Ի՛Ն *(Հիսնամյակի առթիվ)*

ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ



Ով չի տեսել հիսունամյա պիոներ,
Թող տեսնի մեր ամսագիրը համանուն.
Ե՛վ ուսուցիչ, և՛ գիրք է նա, և՛ ընկեր,
Ինչե՞ր ասես իր էջերում չի անում:
Պատմում է նա և՛ հեքիաթներ գեղեցիկ,
Ե՛վ պատմվածքներ է նա տպում մեզ համար,
Ե՛վ բազմաթիվ ոտանավոր երգեցիկ,
Զվարճալի հանելուկներ անհամար:
Երբեմն նա դառնում է լավ խաղընկեր,
Եվ երբեմն էլ մեծերի պես իմաստուն

Գոչում է նա. «Պատրա՞ստ ես դու, պիոնե՛ր,
Պաշտպանելու մեր հայրենիքը արթուն»:
Պատանիները միշտ լսում են նրան՝
Հազարներով պատվի առած և զգաստ,
Եվ ցնծությամբ իրենց ձայնով մանկական
Պատասխանում են սրտաբաց. «Մի՛շտ պատրաստ»:
Այս բոլորի համար ահա, «Պիոնե՛ր»,
Հղում ենք քեզ մեր ողջույնը սրտագին,
Դու՝ ուսուցիչ, դու՝ դաստիարակ, դու՝ ընկեր,
Դու՝ միտքը մեր, դու՝ երգը մեր և հոգին:



digitised by A.R.A.R.@

# Հոբելյանական ողջույններ

ՌՈԲԵՐՏ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ
*ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար*

**1923** թվականին Հայաստանի պատանիներն ու աղջիկները առաջին անգամ իրենց ձեռքն առան «Պիոներ» ամսագիրը:

Հիսուն տարի է անցել այդ հիշարժան օրվանից: Պիոներների շատ սերունդներ են ընթերցել «Պիոներ» ամսագիրը: Հիսուն տարի շարունակ նա եղել է մեր պիոներների ու դպրոցականների մշտական ուղեկիցն ու բարեկամը, նրանց երազանքների ու ձգտումների արտահայտիչը: Ամսագիրը իր ընթերցողներին դաստիարակել է լենինյան վեհ գաղափարների ու ինտերնացիոնալիզմի ոգով, նրանց մեջ սերմանել է բարին ու գեղեցիկը, նախապատրաստել մեծ կյանքի ու ռոմանտիկ նվիրումի, սովորեցրել է սիրել հայրենիքը, աշխատանքը, շատ բանով է նպաստել, որպեսզի պիոներները դառնան իրենց ավագ եղբայրներին ու քույրերին՝ կոմերիտականներին արժանի փոխարինողներ:

«Պիոներ» ամսագրի տոնը նաև ձեր տոնն է, սիրելի՛ պիոներներ: Ուստի, սրտանց շնորհավորելով «Պիոներ»-ի 50-ամյա հոբելյանը, շնորհավորում եմ նաև ձեզ: Ցանկանում եմ, որ ձեր սիրելի ամսագրի երկրորդ 50-ամյակը լինի ավելի քան հարուստ և նա է՛լ ավելի լավ արձագանքի ձեր հույզերի՛ ու անող հետաքրքրություններին:

Մ. Տ. ՀԱԽՈՒՄՅԱՆ
*Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստր*

Մատաղ սերնդին հայրենասիրական վեհ գաղափարներով դաստիարակելու, երեխայի բնավորության կազմավորման և բարոյական կերպարի ձևավորման գործում իր ուրույն և որոշակի դերն է կատարում նաև մանկական մամուլը: «Պիոներ» ամսագիրը կես դար շարունակ բարձր մակարդակով է կատարել իր ստանձնած դերը և դարձել է մանուկների մտերիմ խորհրդատուն, ուսուցիչն ու գրուցընկերը: Ամեն ամիս հայ մանուկը սրտի թրթիռով է սպասել իր սիրելի հանդեսին, իսկ վերջինս իր հերթին միշտ էլ արդարացրել է նրա սպասումները, գեղեցիկ ու հաճելի ժամեր է պարգևել նրան, տվել է գիտելիքներ, բարձրացրել նրա գեղագիտական ճաշակը, օգնել է դառնալու բազմակողմանի զարգացած մարդ:

Ստեղծման օրվանից սկսած՝ ամսագրին մոտ են կանգնած եղել մեր գրականության ու մշակույթի այնպիսի դեմքեր, ինչպիսիք են՝ Եղիշե Չարենցը, Դերենիկ Դեմիրճյանն ու Ստեփան Զորյանը, Նաիրի Զարյանն ու Գուրգեն Մահարին, Մարտիրոս Սարյանն ու Հակոբ Կոջոյանը, Աթաբեկ Խնկոյանն ու Հայրապետ Հայրապետյանը և շատ ուրիշներ, որոնք ամեն ինչ անում էին, որպեսզի մանուկները ստանան հարուստ ու բովանդակալից, հետաքրքիր ու գունագեղ ամսագիր:

«Պիոներ»-ի առաջին ընթերցողները, որոնք այսօր բոլորել և բոլորում են իրենց 60 տարին, եղան մեր երկրի կոմունիստական շինարարության առաջամարտիկները, անձնազոհությամբ կռվեցին Մեծ հայրենականի ռազմաճակատներում, աչքի ընկնե-

digitised by A.R.A.R.@

լով իրենց մարտական սխրանքներով, և նրանց տոկուն բնավորության ու վառ հայրենասիրության ձևավորման գործում իր որոշակի դերն է ունեցել նաև մեր սիրելի ամսագիրը:

«Պիոներ»-ը առանձնապես ծաղկեց և բարգավաճեց հետպատերազմյան տարիներին, երբ ամսագիրը մեծացավ իր ծավալով, սկսեց տպագրվել բարձրորակ թղթի վրա և դարձավ բազմագույն ու ավելի նկարազարդ: Ծեշտակիորեն բարձրացավ նրա տպաքանակը: Եթե մի ժամանակ հանդեսը լույս էր տեսնում ընդամենը 1000 տպաքանակով, այսօր իր ճուտիկի՝ «Ծիծեռնակ»-ի հետ նա 170000-ից անցնում է: Չկա մի դպրոց, դասարան, պիոներական դրուժինա և ջոկատ, որտեղ մուտք չգործի «Պիոներ»-ը և իր հարուստ ու բովանդակալից նյութերով չդառնա մշտական քննության առարկա: Նրա էջերում տպագրված պատմվածքներն ու ակնարկները, բանաստեղծություններն ու երգերը, գիտական մատչելի զրույցներն ու ժամանցի բազմապիսի նյութերը, գեղեցիկ ձևավորումներն ու դասական նկարիչների ստեղծագործությունների վերատպությունները ծառայում են մի նպատակի՝ երեխաներին տալ լրացուցիչ գիտելիքներ, օգնել դպրոցին, որպեսզի մեր աճող սերունդը դառնա խելացի, բազմակողմանի զարգացած, արժանի լինի կոմունիզմ կառուցողի բարձր ու պատվավոր կոչմանը:

Ամսագիրը լայն ասպարեզ է տալիս նաև երեխաների ինքնագործունեությանը և ստեղծագործական մտքի զարգացմանը: Մեր շնորհալի պատանի ստեղծագործողները իրենց լավագույն պատմվածքներն ու բանաստեղծությունները, նկարներն ու քանդակների լուսանկարները տպագրում են իրենց սիրելի հանդեսում: Այսօրվա մեր անվանի գրողների ու նկարիչների գրեթե մեծ մասը իրենց ստեղծագործական առաջին քայլերը կատարել են «Պիոներ» ամսագրի էջերում և հպարտությամբ են հիշում այդ մասին:

Ողջունելով մեր մանուկների ու պատանիների սիրելի բարեկամի 50-ամյակը, վստահ ենք, որ այսուհետև նրա ճանապարհը կլինի նույնքան, գուցե և ավելի պայծառ ու արգասավոր:



իրելի՛ Երջան, հիսուն տարի անց, «Պատկոմ» ամսագրի չորրորդ համարում կարդացի քո հետևյալ թղթակցությունը.

«Սեպտեմբերի 12-ին, Լենպատկազմի «Փարիզյան Կոմունա» կոլեկտիվը մեկնեց թուրքի Ղարաքիլիսա՝ պատկոմական կնունք կատարելու համար: Գյուղում կարծես մեծ տոն էր, մեծ և փոքր հավաքվել էին կալում: Կնքվելու էր կարմիրբանակային ընկ. Հովհաննես Մելքոնյանի երեխան: Կալի մեջտեղը դրած, կարմիր դրոշակներով շրջապատված էր մի սեղան: Սեղանի շուրջը նստած էր պրեզիդիումը՝ երեք հոգուց բաղկացած, որոնցից մեկը՝ նախագահը, կոմբջիջի ներկայացուցիչն էր, մյուսը՝ գյուղացիներից մեկը, իսկ երրորդը՝ պատկոմներից: Նախագահը բաց արավ միտինգը և մանրամասն բացատրեց հին և նոր կնունքների նշանակությունն ու տարբերությունը: Խոսքը տրվեց պատկոմ կազմակերպության ներկայացուցչին, որը խոսեց պատկազմի նպատակի և երեխային պատկազմի շարքերը ընդունելու մասին: Անունը դրվեց Ռոզա (Ռոզա Լյուքսեմբուրգի հիշատակին): Վերջում երեխային տրվեց մի շարք նվերներ: Կոլեկտիվը ընդունելով երեխային իր շարքերը, խոսք տվեց նրան դաստիարակել այն ոգով, ինչ ոգով ինքն է դաստիարակվում: Պատկոմները երգեցին «Ինտերնացիոնալ», որից հետո երեխայի հայրը հայտնեց իր շնորհակալությունը: «Ինտերնացիոնալի» նվագի տակ փակվեց միտինգը, որից հետո պատկոմները տվեցին մարզահանդես: Այս ամենը գյուղացիների վրա թողեց մեծ տպավորություն և չափազանց ուրախ տրամադրությամբ ցրվեցին իրենց տները»:

Մենք շնորհակալ ենք քեզնից այն բանի համար, որ այդքան հեռվից դու մեզ ծանոթացնում ես քո ժամանակվա պիոներական կազմակերպության առօրյային: Հետաքրքրությունն ինձ ստիպեց այցելության գնալ քո գյուղը և տեսնել, թե ինչ պատկեր ունի նա հիմա: Հենց սկզբից ասեմ, որ գյուղը հիմա կոչվում է ոչ թե թուրքի Ղարաքիլիսա, այլ Ախուրիկ,

ԻՆՉ Է ՏՊԱԳՐԵԼ «ՊԱՏԿՈՄ»-Ը

## ԱՆԱՊԱՍՏԱՆ ԵՎ ՀԻՎԱՆԴ ԵՐԵԽԱՆԵՐԻՆ ՕԳՆԵԼՈՒ ԿՈՉ

*Սիրելի՛ ընթերցողներ. մայիսի 20-ից 27-ը Հայաստանի բոլոր վայրերում՝ գյուղերում և քաղաքներում կազմակերպվում է անապաստան և հիվանդ երեխայի շաբաթ: Մինչև խորհրդային իշխանության հաստատվելը Հայաստանում տեղի ունեին անվերջ պատերազմներ: Այդ ժամանակ բազմաթիվ երեխաներ զրկվեցին իրենց ծնողներից և նրանցից շատերը սովից, ցրտից և հիվանդություններից մեռան: Ողջ մնացածներն էլ իրենց կյանքը պահպանեցին մուրացկանությամբ: Այժմ մեր կառավարության և ամերիկյան կոմիտեի կազմակերպած մանկական տներում տեղավորված ապրում են մոտ 28.000 երեխաներ:*

*Սակայն դեռ շատերն են մնացել դուրսը: Այդ*



digitised by A.R.A.R.@

# ԲԱՑ ՆԱՄԱԿ ՊԱՏԿՈՐ ԵՐԶԱՂԻՆ

## (ԲԱՑ ՆԱՄԱԿ, ՈՐԻՆ ԿԱՐՈՂ ԵՆ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՈԼՈՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ)

և դրա պատճառը գյուղի մոտով հոսող սահմանային Ախուրյան գետն է: Ես Ախուրիկ հասա լայն, ասֆալտապատ խճուղով, որի երկու կողմերին մրրգատու այգիներ ու կանաչ արոտավայրեր էին: Ընդամենը տասնհինգ րոպե էլ չպահանջվեց, որ ես Լենինականից Ախուրիկ հասնեմ: Բայց այդ տասնհինգ րոպեն բավական էր, որպեսզի իմ մտքում նորից վերականգնվի հիսուն տարի առաջ կատարած ձեր արշավը, որպեսզի ես նորից պատկերացնեմ փոշոտ ճանապարհով ընթացող ձեր պատկոմական շարքերը, ձեր կարմիր դրոշն ու պոպոզավոր գլխարկները: Ըստ երևույթին հենց այդ կարմիր դրոշն ու գլխարկներին դրոշմված հնգաթև աստղն էր հեշտ դարձնում ձեր երթը փոշոտ ու ամառային տապից չիկացած խճուղով: Եվ հետո՝ նպատակը: ...Դուք գյուղ էիք գնում պատկոմական կնունք կատարելու և ձեր կոլեկտիվը մեկով ավելացնելու համար...

Երբ ես Ախուրիկ հասա, գյուղը հրդեհվել էր կարմիր վզկապների ծիածանից: Միջնակարգ դպրոցի աշակերտները զգաստ ու անսովոր լրջությամբ շարք էին կանգնել գյուղի հրապարակում: Դպրոցի դիրեկտոր ընկեր Պապանյանի հրահանգից հետո, հնչեցին շեփորներն ու որոտացին թմբուկները, պիոներական շարքերը նետի պես ձգվեցին առաջ, դեպի գյուղից դուրս: Ուշագրավ է Ախուրիկի միջնակարգ դպրոցի պիոներական շեփորն ու թմբուկը, նրանք շատ են տարբերվում մնացած բոլոր դպրոցների թմբուկներից ու շեփորներից: Քո տեսածը՝ քսանական թվականների Ախուրիկը, կամ ինչպես ինքդ ես գրում՝ թուրքի Ղարաքիլիսան, ծվարած էր գետի ափին. խարխուլ, գետնափոր տներ, գաղթականների բոկոտն քարավաններ, որոնք թուրքի յաթաղանից փախած, պատսպարվել էին սահմանամերձ գյուղում, որպեսզի գեթ հայացքով փայփայեն գետի մյուս կողմում մնացած դաշտերը, հովիտներն ու լեռնային խենթ աղբյուրները: Բայց նույնիսկ գետի այս ափին ճակատագիրը չխնայեց Արևմտահայաստանի բնակչության վերջին բեկորներին: Հազիվ էր նրանց աչքերի արտասուքը ցամաքել, հազիվ էին նրանք տուն-տեղ դարձել, երբ երկրաշարժը քարուքանդ արեց գյուղը: Փլատակների տակ մնացին վերջին անասուններն ու աղքատիկ կահկարասիները: Սակայն Ախուրյանի այս ափին ծվարած գաղթականներն այլևս անօգ ու անզոր չէին: Երկրաշարժից ընդամենը մի քանի օր անց, գյուղ եկավ անձամբ ինքը՝ ընկեր Կալինինը: Նա ծանոթացավ ստեղծված վիճակին, զրուցեց վրանների տակ բնակություն հաստատած գյուղացիների հետ ու շատ հուզվեց, որ այդ տխուր իրադրության մեջ անգամ իրեն ողջունելու եկան պիոներների կայտառ ու կենսուրախ շարքերը: Ախուրիկի պիոներների հավատով լի խոսքերը շատ դուր եկան նրան, և նա

## ԻՆՉ Է ՏՊԱԳՐԵԼ «ՊԱՏԿՈՄ»-Ը

*շրջմոլիկ երեխաները օգնություն չստանալով ոչ մի տեղից՝ դիմում են գողության, ստի և այդպիսով մի կերպ պահպանում են իրենց գոյությունը: Հաճախ հասակավոր ոճրագործները ժողովում են իրենց շուրջը այս անօգնական երեխաներին և սրանց միջոցով զանազան հանցագործություններ են կատարում: Չքավոր գյուղացիների և բանվորների երեխաների վիճակն էլ վատ է: Նրանց սնունդը պակաս է, հագուստ չունեն, տանը ծանր աշխատանքներով են զբաղված: Դրա պատճառով աշխատավորների երեխաներից շատերը հիվանդ են:*

*Անապաստան երեխաները շարունակելով իրենց անապահով վիճակը, կամաց-կամաց հանցագործ և վտանգավոր են դառնում պետության մեջ: Նրանցից շատերը հենց հիմա բանտերն են ընկնում իրենց կատարած հանցանքների համար: Իսկ հիվանդ երեխա-*



digitised by A.R.A.R.@

երեխաներին պիոներական թմբուկ ու շեփոր նվիրեց: Որպես հաղթության ու պայծառ ապագայի խորհրդանշան: Հետո ընկեր Կալինինը Մոսկվա վերադարձավ ու կարգադրեց երկրաշարժից տուժած գյուղացիների համար նոր տներ կառուցել ու հոգալ նրանց երեխաների բոլոր կարիքները: Հիմա այդ բնակարանները, որ առաջ պալատի նման շքեղ ու գեղեցիկ էին թվում, չեն երևում գյուղի նորակառույցների ֆոնի վրա: Բայց ընկեր Կալինինի նվիրած շեփորն ու թմբուկը սրբությամբ են պահպանվում միջնակարգ դպրոցի պիոներական սենյակում: Այդ շեփորով ու թմբուկով են պիոներները տողանի դուրս գալիս, այդ շեփորով ու թմբուկով են նրանք նշում իրենց բոլոր տոներն ու կարևոր իրադարձությունները, այդ շեփորի կանչերն ու թմբուկի խրոխտ զարկերն են նրանց առաջնորդում ամենուր:

Այսօր Ախուրիկի միջնակարգ դպրոցում տոն է: Մանավանդ, երրորդ դասարանցիների համար: Երրորդ դասարանցիները երբեք չեն մոռանա այս օրը: Չեն մոռանա, թե ինչպես նրանց հանդիսավորությամբ ընդունեցին սահմանապահները, չեն մոռանա հրամանատարի ողջույնը, և մանավանդ այն պահը, երբ սահմանապահները մոտեցան ու կարմիր վզկապ կապեցին յուրաքանչյուրի վզին: Ես նայում էի հուզմունքից ու ոգևորությունից վզկապի նման շիկնած պիոներներին ու ինձնից անկախ հիշում այն օրը, երբ դուք Լենինականից Ախուրիկ եկաք պատկոմների թիվը մեկով, ընդամենը մեկով ավելացնելու համար: Այսօր, սովետական բանակի տարեդարձի օրը Ախուրիկ գյուղից պիոներական կազմակերպության մեջ ընդունվեց ավելի քան քսանհինգ երեխա: Դեռ դա բոլորը չէ: Այս ուսումնական տարում, կոմերիտմիության ստեղծման հիսունամյակի կապակցությամբ, գյուղի նորակառույց պալատում Ախուրիկի առաջավոր կոլտնտեսականները պիոներական կազմակերպության մեջ են ընդունել ևս երեսունվեց հոկտեմբերիկի:

Սիրելի՛ Երջաղ, ես այս թվերը չեմ ասում քեզ զարմացնելու համար... ինչո՞ւ զարմանալ, երբ Ախուրիկի դպրոցում այն ժամանակվա տասնհինգի դիմաց հիմա սովորում է մոտ չորս հարյուր աշակերտ: Այն ժամանակ մի խարխուլ խրճիթում ծալապատիկ նստած երեխաներին գրաճանաչությունից սկսած ամենաբարդ առարկաները սովորեցնում էր միայն մեկ ուսուցիչ, որը բարձրագույն կրթություն էլ չուներ: Հիմա, ամեն օր Ախուրիկի դպրոցի մեկ տասնյակից ավելի դասարաններն են մտնում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ստացած քսանվեց ուսուցիչ: Եվ դպրոցի բարեկարգ ու բավական ընդարձակ շենքն անգամ այլևս չի բավարարում երեխաների և ուսուցիչների պահանջ-

## ԻՆՉ Է ՏՊԱԳՐԵԼ «ՊԱՏԿՈՄ»-Ը

*ները երբ մեծանան, լավ բանվոր կամ աշխատավոր գյուղացի դառնալ չեն կարող՝ իրենց թույլ առողջության շնորհիվ:*

*Հենց այդ պատճառով էլ պետությունը կազմակերպում է հիվանդ և անապաստան երեխաների համար մանկական տներ, դպրոցներ, հիվանդանոցներ. նրանց համար կազմակերպում է արհեստանոցներ և այլն:*

*Սակայն պետության միջոցները քիչ են:*

*Մայիսի 20-ից 27-ը կազմակերպվում է «անապաստան և հիվանդ երեխաների շաբաթ», և ամենքը, ով ցանկանում է, որ մեր խորհրդային հայրենիքի զավակները լինեն բախտավոր և առողջ, պիտի օգնության հասնեն անապաստան և հիվանդ երեխաներին:*

*Մեր ամսագրի ընթերցողները՝ պատանիները և մանուկները պարտավոր են այդ շաբաթ ամենից շատ օգնելու իրենց դժբախտ հասակակիցներին: Մեր ընթերցողները ամեն տեղ պիտի աջակցեն շաբաթ կազմակերպող հանձնաժողովներին: Օգնեցե՛ք միլիցիային, երիտմիության, կինոբաժիններին, պատկոմներին՝ հավաքելու և տեղավորելու անապաստան երեխաներին ապաստարաններում, դպրոցներում, արհեստանոցներում: Օգնեցե՛ք անապաստան երեխաներին. օգնեցե՛ք աշխատանք ու ապաստան գտնելու:*

*Ձեր ընտանիքներում ընդունեցե՛ք այդ երեխաներին իբրև ձեր եղբայրներին և քույրերին:*

*Ամեն ինչ պիտի տալ անապաստան և հիվանդ երեխաներին, որովհետև դրանով ամրանում է մեր պետությունը:*

*Աշխատանք, գիրք, սնունդ, հագուստ. ով ինչ կարող է՝ պիտի տա իր հասակակիցների համար:*

*Այդ շաբաթ մեր ամսագրի ընթերցողների նշանաբանն է՝*

*«Մերն է ապագան. ճանապարհ տվեք մանուկներին և պատանիներին:*

*«Մենք կազմակերպում ենք բոլոր մանուկներին և պատանիներին դպրոցներում, ակումբներում, պատկոմական և երիտմիության շարքերում:*

*«Ոչ մի երեխա չպետք է մնա դուրսը՝ անապաստան, սոված, տգետ»:*

*«ՊԱՏԿՈՄԻ» ԽՄԲ. 1923 թ., № 1, էջ 36:*



digitised by A.R.A.R.@

# ՄԱՃԿԱԼԻ ՑԵՐԱԶԸ

Մեր մաճկալը՝ փոշոտ, քրտնած,
Դաշտից եկավ իր տունը,
Երեկոյան պառկեց հոգնած,
Նրան պատեց խոր քունը:
Եվ քնի մեջ սարսափահար
Երազ տեսավ չարագին,
Որ փչացան կարկտահար
Կանգուն արտերն ու այգին:
Խիստ վախեցած՝ ցատկեց տեղից
Եվ դողալով նայեց վեր,
Տեսավ, պայծառ ջինջ երկնքից
Մեղմ լուսինը ժպտում էր:

*1924 թ., «ՊԱՏԿՈՄ» № 4, էջ 29։*



ները, ու նրանք նոր, ժամանակակից դպրոց կառուցելու հարց են բարձրացրել: Եվ իրավունք ունեն: Իր գոյության մի քանի տասնյակ տարիների ընթացքում, միջնակարգ դպրոցը, որն ի դեպ առաջինն ու ամենահայտնին է ամբողջ շրջանում, երկրին տվել է Լենինի շքանշանակիրներ, սոցիալիստական աշխատանքի հերոսներ, գիտնականներ, կուսակցական ղեկավար աշխատողներ, արդյունաբերության և գյուղատնտեսության շատ ու շատ առաջավորներ: 1923 թվականին թուրքի Ղարաքիլիսա պատկոմական կնունք կատարելու եկած երեխաներից ո՞ւմ մտքով կանցներ, որ գյուղում պիոներների թիվը մի օր կհասնի երկու հազարի, որ պատանի ռոմանտիկների այդ հիանալի ջոկատը առաջնություն կշահի «Արծվիկ» համամիութենական ռազմական խաղերում, կօգնի սահմանապահներին մինչև իսկ լրտեսներ բռնելու ու վնասազերծելու, ամբողջ հանրապետությունում կհռչակվի իր փողային նվագախմբով, երգի-պարի, ակորդեոնի, ֆուտբոլի ու մյուս խմբակների բարձր ցուցանիշներով...

Այո՛, Ախուրիկի պիոներները շատ ու շատ բանով են աչքի ընկնում, սակայն, իմ տպավորությամբ ամենից առաջ ու ամենից շատ նրանք աչքի են ընկնում երազելու ընդունակությամբ: Եվ ինչպես բոլոր երազողները, նրանք էլ լավ գիտեն, որ առանց նախորդների փորձն ու պատմությունը յուրացնելու, անորոշ ու անիմաստ կլինեին իրենց երազները: Այդ պատճառով, ես իմ այս նամակը ուղղում եմ նաև մեր օրերի բոլոր պատկոմներին, որոնք հիմա պիոներ են կոչվում: Հիմա ես ցավ եմ զգում, որ մի քանի օր Ախուրիկ գյուղում մնալուց, բոլոր ծերունիների հետ զրուցելուց և արխիվները թղթատելուց հետո, չգտա կարմիրբանակային Հովհաննես Մելքոնյանի ու նրա աղջկա՝ Ռոզայի հետքերը, որին, ինչպես դու ես գրում, պատկոմ եք ընդունել 1924 թվականի սեպտեմբերի 12-ին:

Սակայն ես չեմ վհատվում: Ես հավատում եմ, որ ինձ կօգնեն Հայաստանի բոլոր պիոներները, այն հազարավոր ռոմանտիկները, որոնց համար կյանքում անհնարին ոչինչ չկա: Թող նրանք նորից ու նորից ուշադիր ընթերցեն քո թղթակցությունը, իսկ հետո փորձեն ուսումնասիրել և պարզել, թե ինչ եղավ 1924 թվականին այդպիսի յուրօրինակ պայմաններում պատկոմ ընդունված Ռոզա Մելքոնյանը և հետո ինչպես ընթացավ նրա կյանքի ուղին:

Երեխաների հետազոտությունների արդյունքներին սիրով կսպասի «Պիոներ» ամսագիրը և դա էլ հենց մեր պիոներների մի առանձնահատուկ նվերը կլինի իրենց սիրելի հանդեսին՝ նրա կեսդարյա հոբելյանի առթիվ:

Ջերմությամբ ու հաջողության մաղթանքներով՝

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ



digitised by A.R.A.R.@

# Նրանք նկարազարդել են ԵՐԵԿ



ԿԱՐՈ ՀԱԼԱԲՅԱՆ



ՎՐԹԱՆԵՍ ԱԽԻԿՅԱՆ

Խմբագրության գրական բաժինները ավարտել են աշխատանքը «Պիոներ» ամսագրի հերթական համարի վրա: Նյութերը գրվել են, խմբագրվել, անհրաժեշտ ընտրությունից հետո համարը կազմվել է: Այնուհետև խոսքը նկարիչներինն է: Նրանք պետք է հնարավոր ամեն ինչ անեն, որպեսզի ամսագիրը ընթերցողներին հասնի որքան կարելի է գեղեցիկ ու ճաշակով ձևավորված: Սկսվում է նկարչի բարդ ու լարված աշխատանքը:

«Պատկոմ»-ի ստեղծման առաջին իսկ օրերից ամսագրի շուրջը համախմբվեցին հանրապետության լավագույն նկարչական ուժերը: «Պատկոմ»-ի անդրանիկ համարի շապիկը նկարել է մեծանուն ճարտարապետ Կարո Հալաբ-

## ԵՍ ԷԼ ԷԻ ՊԱՏԱՆԻ



Մենք մեզ տրամադրված ա-կումբային դահլիճը մեր ձեռքով էլ վերանորոգեցինք, կառուցեցինք բեմ, իսկ նրա վարագույրի նկարազարդումը հանձնարարվեց ինձ: Ես այն ժամանակ 16 տարեկան էի, չունեի նկարչական կրթություն: Սակայն խանդավառ տրամադրությունը ամեն ինչ մատչելի և հեշտ էր դարձնում մեզ համար: Ստյոպա Մանուկյանի (Հայաստանի պիոներական կազմակերպության հիմնադիրն ու ղեկավարը) հանձնարարությամբ թղթի վրա ակվարելով մի էսքիզ նկարեցի, նա հաստատեց էսքիզը և ինձ ուղարկեց պետական թատրոնի նկարիչ Գ. Երիցյանի մոտ: Նկարիչը բեղի տակ ժպտալով բացատրեց, թե ինչպես պետք է փոշի ներկերը բացել (որն առաջին անգամ էի տեսնում), ինչպես վարագույրը կարել, ձգել հատակի վրա և այլն:

Վարագույրը կարճ ժամանակից հետո զարդարեց դահլիճը: Նկարել էի, իհարկե, Մասիսը, կարմիր աստղ, պիոներների շարքեր, շեփորներ և մի պիոներ առջևում՝ ջահը ձեռքին: Պիոների դեմքը նման էր ինձ, որովհետև բնորդը ես էի, հայելուն նայելով ինձ էի նկարել: Դրա շնորհիվ ես մեծ ճանաչում ունեցա:

Այդպիսով «ճանաչված նկարիչ» դառնալուց հետո, սկսեցի հաճախել նկարչական դպրոց, որտեղ այն ժամանակ դասավանդում էին մեր մեծ վարպետները՝ Աղաջանյանը, Առաքելյանը, Գայֆեճյանը: Այդ ինձ օգնեց նկարչական անհրաժեշտ գիտելիքներ ձեռք բերել: Դրանից հետո մըշտապես կապվեցի «Պատկոմ» ամսագրի հետ, նրա նկարազարդումների զգալի մասը ես էի կատարում:

«Պիոների» նկարազարդման իմ աշխատանքներում ինձ մեծ չափով օգնում էր այն, որ ես ինքըս սերտորեն կապված էի պիոներական կազմակերպության հետ, մասնակցում էի նրա բոլոր աշխատանքներին: Խնկո-Ապերը, որը ամսագրի ակտիվ հեղինակներից էր, երբեմն դժվարանալով նյութերի ընտրության մեջ, դիմում էր ինձ. «Հո՛ջ ջան, մի բա՛ն նկարիր, ես դրա մասին գրեմ», և ես գտնում էի հարմար նյութ ու նկարում, նա դրա հիման վրա գրում էր:

Այդ տարիներին էր, որ մի օր



digitised by A.R.A.R.@

## Նրանք նկարազարդում են ԱՅՍՕՐ

յանը, երկար տարիներ ամսագրում աշխատել են անվանի նկարիչներ Վրթանես Ախիկյանը և Հրայր Իսաբեկյանը:

Անցել են տարիներ, փոխվել են ամսագրի նկարիչները, բայց մի բան մնացել է անփոփոխ. այսօր էլ «Պիոներ»-ի շուրջն են համախմբված հանրապետության լավագույն նկարիչները՝ ՍՍՀՄ գեղարվեստների ակադեմիայի թղթակից-անդամ Գրիգոր Խանջյանը, ՀՍՍՀ վաստակավոր նկարիչներ Սուրեն Ստեփանյանը, Հակոբ Հակոբյանը և Ալեքսանդր Գրիգորյանը, ամսագրի գլխավոր նկարիչ Կարեն Սմբատյանը և ուրիշներ, որոնց անունները ձեզ, իհարկե, վաղուց են ծանոթ ու հարազատ ամսագրի էջերից:


ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆ


ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ


ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆ


ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ


ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ

էլ ինձ բախտ վիճակվեց առաջին անգամ հանդիպել և ծանոթանալ մեր մեծ նկարիչ Մարտիրոս Սարյանի հետ: Նրան պատվիրված էր մի նոր դասագրքի շապիկ նկարել, կարծեմ «Լուսաբեր» վերնագրով: Նա էլ խնդրում է Ստոլպային՝ մի պիոներ ուղարկել իր մոտ իբրև բնորդ: Ստոլպան ուղարկեց ինձ: Մարտիրոս Սարյանը ինձ նկարեց դասագրքերը թևիս տակ, մի ձեռքս պարզած դեպի արևը: Ես, որ մարմնամարզական վարժությունների լավ կատարողներից էի, կանգնել էի «գեղեցիկ» դիրքով, ձգված, ոտքերս ու ձեռներս որոշակիորեն իրար հետ համաձայնեցրած: Երբ գիրքը լույս տեսավ, ես զարմացա, որ իմ դիրքը նկարի վրա բոլորովին այլ էր: Իմ կարծիքով հասարակ ու ոչ գեղեցիկ:

Տարիներ հետո միայն, երբ ավելի շատ բան սկսեցի հասկանալ նկարչությունից, նոր պարզ դարձավ, թե ինչու էր մեծ վարպետը իմ հանդիսավոր, թատերական կեցվածքը փոխարինել պարզ ու բնական կեցվածքով:

Շատ անվանի արվեստագետներ էին մոտիկ կանգնած ամսագրի աշխատանքներին, մեծ հոգատարություն էին ցուցաբերում մեր նկատմամբ և օգնում մեզ: Դրանցից էին՝ Չարենցը, Ռոմանոս Մելիքյանը, Կարո Հալաբյանը, Միքայել Մանվելյանը և շատ ուրիշներ:

Այսօր նույնպես «Պիոների» հրատարակությանը մասնակցում են հանրապետության բոլոր լավագույն գրողներն ու նկարիչները:

Բայց այսօր պայմանները այնպիսին են, որ մենք այն ժամանակ չէինք էլ կարող երազել:

ՀՐԱՅՐ ԻՍԱԲԵԿՅԱՆ

Վաստակավոր ճարտարապետ



digitised by A.R.A.R.@

# ՀԵՌԱԴԻՏԱԿԸ

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ



Իմ հորեղբայր Արշակը իմ տարիքին էր, 1929 թվականի ամռանը հեռադիտակը վիզը գցած մեկնում էր պիոներական ճամբար, ուրեմն ես, որ մի քանի օր առաջ էի գերազանց գնահատականներով փոխադրվել վեցերորդ դասարան, հիմա, 1978 թվականի ամռանը, բոլոր իրավունքներն ունեի վաղը Ծաղկաձոր մեկնել այդ նույն հեռադիտակով: Ես կանգնեցի թաթերիս վրա և պատից իջեցրի հեռադիտակը: Մի քիչ ավելի բարձր կախված էր իմ հորեղբայր Արշակի լուսանկարը, որտեղ նա թեև արդեն մեծ էր ինձնից, բայց էլի երիտասարդ էր:

Տատս ասես ծծրակին էլ աչքեր ուներ: Նա շուռ եկավ ու նայեց ինձ:

— Անմիջապես ետ կախիր,— նայելով ուսի վրայից, ասաց հայրս:

Ես ձեռքումս դանդաղ շուռ ու մուռ տվեցի հեռադիտակը, հերթով նայեցի մեկ տատիս, մեկ հորս, համոզված, որ ինձ անհնար է մերժել: Այս անգամ իմ խելացի, պահանջող ու հնազանդ հայացքի առջև տեղի տվեց հորեղբորս որդի Զավենը:

— Դե լա՛վ,— ասաց նա,— ի՞նչ պիտի լինի, թող նայի, թե սիրտն ուզում է:

— Հա՛, ցա՛վդ տանեմ,— ասաց տատս,— մի քիչ խաղա ու էլի տեղը կախիր:

Նստած թթենու բարձր ճյուղին՝ ես թութ էի գցում բերանս և մերթ ընդ մերթ հեռադիտակն աչքերիս մոտեցնում, իսկ 1929 թվականի ամռանը իմ հորեղբայր Արշակը տուն էր գալիս ու հայտարարում, որ մի քանի օրից երկու ամսով գնալու է ճամբար:

Եվ այսպես ուրեմն, իմ հորեղբայր Արշակը ճամբար էր գնում, հեռադիտակը վիզը գցած լուսանկարվում անտառի և վրանների ֆոնի վրա, իսկ ես իջա ծառից, նստեցի արտասանդուղքի աստիճանին և իմ հորեղբորորդի Զավենի երկարաճիտ կոշիկները ոտքերիս քաշեցի: Նրանք մեծ էին, ոտքերս խաղում էին մեջը, բայց կարված էին հաստ ու կոպիտ կաշվից, և հազիվ երկու քայլ գցած, հասկացա, որ իսկական արշավային կոշիկներ են ու անպայման սազում են հեռադիտակիս:

— Կփչացնես Զավենի կոշիկները, բալի՛կ ջան, ափսոս են, հանիր,— տնից դուրս եկավ ու խնդրեց մայրս:

Մարմնով խցանելով դուռը, երևաց իմ հորեղբորորդի Զավենը, մեծ ձեռքով սղալեց մազերը, հայացքով հանդիպեց ինձ, բարեհոգի ժպտաց ու ասաց մորս.

ԻՆՉ Է ՏՊԱԳՐԵԼ «ՊԱՏԿՈՄ»-Ը

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ՈՒ ՏԵԽՆԻԿԱ

## ԲՈՅՑԵՐԶԵԿՆ ՈՒ ՀԱՐԱԲԵՐԱԿԱՆԸ

*Մի քանի շաբաթ առաջ Երևանում մեծ հետաքրքրություն առաջացրեց 15 ու. «գիտնական» Վ. Համբարձումյանը իր դասախոսություններով՝ տիեզերագիտությունից: Ի միջի այլոց նա խոսեց գերմանացի հանճարեղ գիտնական Ալբերտ Էյնշտեյնի «հարաբերականության» թեորիայի (տեսության) մասին:*

*Գիտության զարգացման ողջ պատմությունը ապացուցում է այդ տեսությունը: Վերցնենք հենց մեզ հայտնի արեգակնային համակարգությունը: 5—7-րդ դարերում երկիրը համարվում էր տիեզերքի կենտրոն և ոչ ոք չէր կասկածում այն ժամանակ դրանում: Սակայն փաստերը հավաքվեցին, գիտությունը խորացավ, Կոպերնիկոսը և Գալիլեյը շպրտեցին երկիրը կենտրոնից, հարկադրեցին նրան պտտվել հոլի պես, և մարդիկ (հակոտնյաներ) սկսեցին «գլխիվայր» ման գալ: Այս ճշմարտությունը մենք անհողդողդ ենք համարում, իսկ Էյնշտեյնի թեորիան ոչինչ չի համարում մշտական ու բացարձակ. ժամանակը հարաբերական է և կախված է շարժողության արագությունից, արագության օրենքը՝ նույնպես. նյութը անփոփոխ չէ, այլ ենթակա է շարժման արագությունից և լույսի էներգիայից առաջացած փոփոխություններին:*

*Ահա ձեզ մի պարզ օրինակ՝ ինչպես արտաքին հանգամանքները հարաբերական են դարձ-*



digitised by A.R.A.R.@

— Ոչինչ, թող հագնի, թե որ սիրտն ուզել է, վնաս չկա։

Անձրևը խփեց ծիրանի ծառի տերևներին, խոշոր կաթիլները փոշի հանեցին չորացած մարգերից, մտածեցի, որ եկավ ու փչացրեց հիանալի օրը, բայց գլխի ընկա, որ երկարաճիտ կոշիկներիս համար ո՛չ անձրևն է սարսափելի, ո՛չ էլ ջրհեղեղը։

— Ոտքերիդ ցեխի՛ն նայիր, ինչպե՛ս ես ներս գալիս,— տեղից վեր թռավ ու իրար անցավ մայրս։

— Ոչի՜նչ, ոչի՜նչ,— ժպիտը երեսին հանգստացրեց մորս ու ինձ պաշտպանեց իմ հորեղբորորդի Ջավենի կինը,— երեխային մի՛ նեղացրու, հատակն առանց այդ էլ մաքուր չէր։

Իմ ոտնահետքերը սրբած թաց շորի հետքերը չորանում էին, անձրևը սաստկանում էր, և քանի որ տանը փակված սպասում էինք, մինչև դադարի, ապա ստիպված էինք լսել, թե ինչպես էր իմ հորեղբայր Արշակը նույն 1929 թվականի գարնանը դրսից ասում տատիս, որ իրենց ծաղկանոցն ամենասիրունն է լինելու թաղում։ «Հա, հոգուդ մեռնեմ»,— պատասխանում էր տատս ու նոր միայն անդրադառնում լսածին և հուսալով, որ ականջները խաբում են իրեն, երկու տարեկան հորս գրկած դուրս էր գալիս արտասանդուղք և հարցնում, թե ի՞նչ ծաղկանոցի մասին է խոսքը։ «Մեր ծաղկանոցի»,— պատասխանում էր իմ հորեղբայր Արշակը։ «Մենք ծաղկանոց չունենք»,— ասում էր տատս, զարմանալով իր ինքնատիրապետման վրա։ Ես հեռադիտակը հակառակ կողմից էի մոտեցնում աչքերիս, սենյակը երկարում էր, տատս արտաքսվում էր սենյակի հեռավոր անկյունը, փոքրանում և այնտեղից պատմում էր, որ 1929 թվականի գարնանը մի կերպ համբերում էր, չնայած պայթում էր վրդովմունքից, որովհետև պապս ու իմ հորեղբայր Արշակը տակնուվրա էին արել հողամասի լավագույն ու մեծ կտորը և ծաղկի սերմեր էին ցանում։ «Այս հողում վարունգն ու պոմիդորը բերք չեն տա»,— ասում էր պապս, և տատիս համբերությունը սպառվում էր։ Նա ձայնը բարձրացնում էր ու զարմանում, թե ինչո՞ւ նախկին տերերի օրոք բերք տալիս էր, իսկ հիմա չի տալու, այդ ինչպե՞ս է եղել, որ մոռացել են, թե ոնց էր Արշակը գիշերով վարունգ ու պոմիդոր թռցնում հարևանների բոստանից, բայց եթե թռցներ և ուտեր միայն նա, էլի ոչինչ, երեխա է, քաղցին չէր դիմանում, տեսնում էր ուրիշներն ունեն, ուտում են, աչքը մնում էր վրան, բայց որդու բերած վարունգ ու պոմիդորից գաղտագողի համտես էր անում հարգարժան և ուսումնական հայրը, որդու գլխին քարոզ էր կարդում, բայց

նում «բացարձակը», օրինակ՝ ջերմությունը. +5° R խափշիկի համար սոսկալի ցուրտ է, Մոսկվայի բնակչի համար «տաք է», իսկ բևեռի բնակիչ էսկիմոսի համար «շոգ է»։

Ամերիկացի գրող Էդգար Պոն մի պատմվածք ունի՝ «3 կիրակի օր մի շաբաթում»։ Երկու նավատիներ շուրջերկրյա ճանապարհորդությունից հետո պատահեցին. մեկն արևելքից էր գալիս, մյուսը՝ արևմուտքից։ Նա, որ երկրագունդն անցել էր արևմուտքից արևելք, իհարկե, միշտ ետ էր ընկնում, ժամանակը նրան երկար էր թվում, և նրա հաշվում մի օր կավելանար (մի անգամով ավելի էր տեսել արևի ծագումը). մյուսի համար, ընդհակառակը, ժամանակը ավելի կարճ էր, մի անգամ պակաս էր տեսել արևի ծագումը և մի օր պակաս էր հաշվում։ Այսպիսով, եթե հանդիպած տեղում օրը նրա համար կիրակի էր, արևելքից եկողի համար հետևյալ օրն էր լինելու կիրակին, իսկ արևմուտքից եկողի համար կիրակին երեկ էր։

1923 թ., «Պատկամ», № 1։



## ԱԶԱՏՎԵՑԻ՜Ն

Տոն օր էր։ Պատկոմները կանոնավոր շարքերով միացան ընդհանուր երթին. նվագախումբը գընում էր առաջից։

Ամեն անգամ, երբ լսվում էր պատկոմների նվագը, փոքրիկ Համոն տեղը հանգիստ կանգնել չէր կարողանում. պատկոմների ետևից ինքն էլ ծխախոտի տուփերով լիքը արկղը վիզը գցած, ներս ընկած կրծքին ոսկրոտ մատներով սեղմելով, քայլում էր։

Երբ նվագը դադարում էր, նա հիշում էր, որ պետք է վաճառի ու նվագ ձայնով կանչում էր՝

— Պապըրո՜զ, պապըրո՜զ...

Համոն շատ էր ուզում պատկոմ դառնալ, բայց ինչպե՞ս։

Երկար հետևելով պատկոմներին, նա իմացավ, որ նրանց գլխավոր շտաբը գտնվում է Աբովյան փողոցի վրա։

Ծխախոտի արկղը ձեռքին եթե գնար, էլի պատկոմները նրան պիտի սպեկուլյանտ ասեին։ Սպեկուլյանտ բառը նրան անչափ վիրավորում էր։ Նա գիտեր, որ իր խազեինը սպեկուլյանտ է և իր աշխատանքը այդ խազեինի գըրպանն էր գնում. ինքը ինչ սպեկուլյանտ էր, որ երբեք կուշտ փորով հաց չէր ուտում։

Որպեսզի չվիրավորեն, նա իր արկղը պահ տվեց ընկերոջը, նախօրոք համրելով։

— Տե՛ս, քանի տուփ է, հա՛...

ԻՆՉ Է ՏՊԱԳՐԵԼ «ՊԻՈՆԵՐ»-Ը



digitised by A.R.A.R.@

— Լա՛վ, լա՛վ, գնա՛...

Համոն վախվխելով մտավ շտաբը և մոտեցավ պետին:

— Ի՞նչ ես ուզում:

— Ուզում եմ պատկոմ գրվեմ:

— Հայր-մայր ունե՞ս, որտե՞ղ ես ապրում:

— Որբ եմ: Ապրում եմ Ռուբենի փողոցում:

— Ո՞ւմ մոտ:

— Սարգիս Վանեցյանի:

— Նա ինչո՞վ է զբաղվում:

— Սպեկուլյանտ է:

— Սպեկուլյա՞նտ,— հարցրեց պետը,— իսկ դու ինչո՞ւ ես նրա մոտ ապրում:

— Նա ինձ փողոցից վերցրեց:

— Ծառայո՞ւմ ես տանը:

— Տանն էլ, ամեն տեղ էլ. ամբողջ օրը պապըրոզ եմ ծախում:

— Նրա համար:

— Այո. մենակ ես չեմ, հինգ հոգի ենք. ամբողջ օրը ծախում ենք, գիշերը գոմում քնում. ոչ մի օր էլ կուշտ հաց չենք ուտում, ամեն օր էլ ծեծում է...— Վրա տվեց Համոն, ուրախանալով, որ մեկը իր կյանքով հետաքրքրվում է:

Պետը բարկացած սեղմեց շրթունքները և հոնքերը կիտեց: Համոն վախեցած լռեց:

— Իսկ դու և քո ընկերները կուզենայի՞ք մանկատանը ապրել:

Համոն փայլեց.

— Այո, թող որբանոցում ամբողջ օրը բանեցնեն, բայց գիր սովորեցնեն ու պատկոմ լինենք:

Պետը ինչ-որ բան էր մտածում:

— Լա՞վ, ես կխոսեմ մանկատների վարիչի հետ: Կարծեմ մի որբանոցում տեղ կա: Վաղը ժամը 1-ին արի, պատասխանը իմացիր: Իսկ այդ սպեկուլյանտի հասցեն տուր:

— Ռուբենի փողոց, № 79, Սարգիս Վանեցյան, ամենքը ճանաչում են, շատ հարուստ է:

— Վարդգե՞ս,— կանչեց պետը,— այս հասցեով գնա և իմացիր, թե քանի որբեր են ապրում

բոլորից թաքուն ինքն էլ էր ուտում, չամաչելով իր խրատներից, ուսումից ու տարիքից, որովհետև նույնպես քաղցած էր, տեսնում էր ու սիրտը չէր դիմանում, և հիմա մի հարցնող լինի, այդ ի՞նչ հրաշք է պատահել, որ նա կշտացել է: Ես հեռադիտակը շրջում էի, և սենյակը կարճանում էր ու մոտենում, տատս ետ էր գալիս ու մեծանում, իսկ 1929 թվականին պապս թույլ-թույլ դիմադրում էր. «Այդ բոլորը ճիշտ է, բայց ծաղիկն էլ իր տեղն ունի,— ասում էր,— ծաղիկն էլ գեղեցկություն է»: Տատս կարգադրում էր. «Ոնց ցանել եք, այնպես էլ մեկ-մեկ ջոկեք ծաղկի սերմերը», բայց ինքն էլ էր հասկանում, որ այդ ցանկությունը, դժբախտաբար, անհնար է իրականացնել, ուստի երկու տարեկան հորս դնում էր պապիս գիրկն ու ասելով. «Դուք ծաղիկը կուտեք, ես՝ վարունգը», սեփական ձեռքով վերականգնում էր մարգերը և վարունգ ու պոմիդոր ցանում:

Երկարաճիտ կոշիկներիս կպած ցեխը չորանում էր, վերստանում իր նախնական գույնը, փշրվում էր ու հատակին թափվում, հեռադիտակը վիզս գցած՝ արդեն ձանձրանում էի ու մտածում տուն գնալու մասին, իսկ 1929 թվականին մարգերը կանաչում էին մատնաչափ ծիլերից, տատս կռացած քաղհանում էր, պապս քայլում էր նրա ետևից, մեկ-մեկ հավաքում արմատախիլ արված ծիլերը և գլուխն օրորելով ասում. «Սա նարգիզ կդառնար, սա՝ մեխակ, այս մեկն էլ կա-չկա վարդ է»: Անձրևը չէր դադարում, և իմ հորեղբայր Արշակը կրկին անգամ մեկնեց ճամբար, նորից լուսանկարվեց անտառի ու վրանների ֆոնի վրա, իսկ երբ օգոստոսին սևացած վերադարձավ, տեսավ, որ հակառակ տատիս բոլոր ջանքերին, պոմիդորի ու վարունգի դեղնած թփերի միջից այս ու այնտեղ հպարտ գլխիկներն են բարձրացրել ու տատիս երեսին ծիծաղում են մի քանի տասնյակ մեխակներ ու նարգիզներ:

Իմ հորեղբայր Արշակն արդեն իմ տարիքին չէր, շատ մեծ էր ինձնից. Զավենն անունով մեկ տարեկան տղա ուներ և ռազմաճակատից տառասխալներով լի նամակներ էր գրում, ընդ որում ձեռագիրն էլ մի բանի նման չէր, իսկ հիմա անձրևը վերջապես դադարեց:

Ես մի քանի անգամ գնացի ու եկա պարսպի երկարությամբ, համոզվելով, որ ցեխն ու անձրևաճաճկները սարսափելի չեն ինձ համար, հետո ջրերի մեջ մեկը մյուսի ետևից երևացին մերոնք, ու հայրս ասաց.

— Դե՛, բավակա՞ն եղավ ինչքան այսօր անկարգություն արեցիր, պատրաստվիր գնա՛նք:

Ես արեցի մի քայլ, երկրորդը, որպեսզի մտնեմ տուն ու հանեմ իմ հորեղբորորդի Զավենի երկարաճիտ կոշիկները: Նրանք, իհարկե, սազում էին հեռադիտակիս, բայց ոտքիս մեծ էին ու հարմար չէին հեռավոր արշավների համար: Ես առանց ափսոսանքի հրաժարվում էի նրանցից, բայց կանգ առա, որպեսզի համոզվեմ, որ թյուրիմացություն չի լինելու. կփոխեմ կոշիկներս ու կգնանք:

— Հեռադիտակն էլ կկախես իր տեղը,— ասես կարդալով մտքերս, ասաց հայրս:

— Ի՞նչ օգուտ պատից կախելուց,— ասացի ես: Ես չէի շտապում հեռանալ պարսպի երկարությամբ, դեռ հույս ունեի իմ հայացքով գինաթափել մերոնց, բայց հայրս, չգիտես ինչու, այս անգամ չէր ենթարկվում կախարդանքին, իսկ մյուսների աչքերին ինձ չէր հաջողվում հանդիպել:

— Գլուխս մի՛ տար,— ասաց հայրս,— արա՛, ինչ քեզ ասում են:

Ծփոթված ժպտալով, իմ հորեղբորորդի Զավենը դուրս թռած վերնաշապիկն էր խրում անդրավարտիքի մեջ:

— Ոչինչ,— ասաց նա,— ոչինչ:

Հիմա ես գիտեի, որ հայացքիս ուժը նրա վրա պետք է փորձել, դրա համար էլ չհեռացա պարսպի երկարությամբ, ու մայրս բռնեց ինձ:



digitised by A.R.A.R.@



Նա բռնել էր կաշեփոկից, աշխատում էր վզիցս հանել հեռադիտակը, նա փորձում էր հանել, ես գալարվում էի ու չէի թողնում: Իմ հորեղբայր Արշակը գիշերով վարունգ էր թցնում հարևանների բոստանից, քսանհինգ տարեկան հասակում գրում էր տառասխալներով, ես գերազանց գնահատականներով էի փոխադրվել վեցերորդ դասարան, բայց նրան կարելի էր հեռադիտակով մեկնել ճամբար, իսկ ինձ՝ ոչ: Մայրս կաշեփոկը բաց չէր թողնում, իսկ ես գալարվում էի ու իմ կողմը քաշում: «Ոչինչ»,— դարձյալ կրկնում էր իմ հորեղբորորդի Զավենը, մորս չէր հաջողվում կաշեփոկը հանել վզիցս, իսկ ես կարողացա ազատվել նրանից ու քայլեցի պարսպի երկարությամբ: Իմ մեծ կոշիկները սահում էին թաց հողի վրայով, ետևումս ծիծաղում էին, ես չնայեցի ու հասկացա, որ ծիծաղում է հայրս, հասկացա, որ ինձ վրա է ծիծաղում: Նրա աչքերով ու նրա տեղից նայեցի ինձ և տեսա, որ հեռադիտակը վզիս, մեծ երկարաճիտ կոշիկներով ու նեղացած-փքված տեսքով իսկապես ծիծաղելի եմ, և հենց դրա համար, որ տեսքս ծիծաղելի էր, բայց իմ ծիծաղը չէր գալիս, և որ հայրս հեռվից, դռների մեջ կանգնած ասաց. «Մի վրա՛դ նայիր, տես ո՞ւմ ես նման, ամո՛թ է», իսկ ես արդեն նայել էի ու նրան, թե ինձ պատժելու համար չգիտեի ինչ անեմ, և քանի որ չգիտեի, քայլեցի դիտավորյալ ոտքերս բարձր դնելով, էլ չսահեցրի առաջվա նման, և երբ այդպես քայլեցի, ոտքերս իրենք իրենց դուրս եկան իմ հորեղբորորդի Զավենի երկարաճիտ կոշիկների միջից, սկզբում մեկը, ապա մյուսը, իմ հորեղբորորդի Զավենի երկարաճիտ կոշիկները կողք-կողքի կանգնեցին մարգի մեջ, իսկ ես միայն գուլպաներով գցեցի մեկ քայլ, երկրորդը, երրորդ քայլի վրա ոտքս թեք գնաց, ոլորվեց, ես կորցրի հավասարակշռությունս, հեռադիտակը խըփվեց փորիս, և ես քիթ ու բերանի վրա ընկա այն նույն մարգի մեջ, որտեղ 1929 թվականի գարնանը իմ հորեղբայր Արշակի մտքով անցել էր ծաղիկ աճեցնել:

Իմ հորեղբայր Արշակը հպարտ-հպարտ ճամբար էր մեկնում,



այդ սպեկուլյանտի մոտ և դրանց աշխատանքը նա ինչպես է շահագործում: Պատասխանը այսօր անհրաժեշտ է:

Երբ Համոն ընկերներին պատմեց, բոլորի դեմքը էլ փայլեց:

Պետական մանկատուն ընկնելը նրանց համար երջանկություն էր, այնտեղ չէին ծեծում, դպրոց էին ուղարկում, ամենքը պատկոմական մարզանքներին մասնակցում էին, մաքուր հագնվում, կերակըրվում...

— Տղե՛րք, ա՛յ կճաքի ծուռ Սաքոն,— ասաց մեկը:

«Ծուռ Սաքոն» նրանք իրենց խազեինին էին ասում, ծուռ ոտի պատճառով:

— Թող տրաքի՜,— վրա բերեց մյուսը,— որ կառավարությունը իմանա, թե ոնց է մեզ ծեծում, Չեկա կտանի՜:

— Էսօր փախչե՞նք— հարցրեց մեկը:

— Չէ՛, քա՛նմ,— ասաց Համոն,— սպասեցեք, վաղը պատասխանը իմանամ, նոր:

Մյուս օրը ժամը 1-ին Համոն ներս մտավ շտաբը. սիրտը թըրթըռում էր. ընկերները սպասում էին դուրսը:

— Գնա՛նք ինձ հետ մանկատըների վարիչի մոտ,— ասաց պետը:

Համոն պետի հետ գնաց Լուսժողկոմատ, մանկատների վարիչի մոտ:

— Հա՛,— ասաց վարիչը,— այսօր ձեզնից երեքը կարող են մտնել մանկատուն, իսկ երկուսը, հետո...

— Չէ՛, էդպես չենք կարող,— շշնջաց Համոն, վախվխելով:

— Ինչո՞ւ:

— Որ երեքս գնանք, խազեինը էն երկուսին շատ կծեծի. միասին մի քանի օր սպասենք, որ միասին գնանք:

Վարիչը նայեց նրան:

— Ապրիս, տղա, որ մտածում ես ընկերներիդ մասին, լավ, թող քո ասածը լինի. հինգդ էլ վաղը եկեք, հենց վաղն էլ մանկատուն կմտնեք...

— Իսկ խազեինը մեզ ետ չի՞ տանի:

— Թող մի քիթը ցույց տա՛...



digitised by A.R.A.R.@

## ԻՆՉ Է ՏՊԱԳՐԵԼ «ՊԱՏԿՈՄ»-Ը

Մյուս օրը հինգն էլ վաղ առավոտյան, առանց ծխախոտի արկղերը վերցնելու, կամացուկ անհետացան գոմից ու դեպի Էուժոռչկոմատ վազեցին:

Դեռ շուտ էր. նրանք բակում նստեցին սպասելու:

— Ախչի Անգի՛ն,— կանչեց Խազեինը,— էն շան լակոտները քնա՞ծ են դեռ, գնա զարթեցրո՛ւ, շուտ գնան առևտրի, ծրիակերնե՞ր.... ես ձե՛ր...

Անգինը վերադարձավ, ասաց, որ գոմում ոչ ոք չկա: Խազեինը զարմացավ, կատաղած ինքն էլ գոմը գնաց, լուցկի վառեց, տեսավ՝ խոտի վրա ոչ ոք չկար:

— Ա՜հ, սպասի՛ր, ես կքերթե՛մ էսօր դրանց կաշին... Զրիակերնե՞ր, շա՛ն...

Բայց... էլ քերթել չէր կարող,— ձեռքը չէր հասնի: Այդ օրը հինգին էլ մանկատուն ընդունեցին, լողացրին, մաքուր շորեր տվին, կերակրեցին:

— Առայժմ անկողիններդ հատակի՛ն գցեք, մինչև որ թախտեր բերենք,— ասաց կառավարչուհին:

— Ոչինչ...

Խեղճ երեխաները ուրախությունից խելքը կորցրել էին:

— Ինչ լա՞վ է,— շշնջում էին իրար ականջի:

Հինգն էլ դպրոց ընդունվեցին, չնայած որ տեղ չկար, իրարից բաժանվել չէին ուզում, էնքան ուսուցչին խնդրեցին, որ ընդունեց:

Մի ամիս անց, երբ պատկոմնեբի հետ շարքերով անցնում էին «Կոմունարների այգու» մոտով, նրանք տեսան «ծուռ Սաքոյին»:

Այժմ նա միանգամայն անվտանգ էր: Երեխաները ժպտալով իրար նայեցին:

ՍԵՐԻԿ

*«Պատկոմ» 23 թ. № 2*



կուրծքը դուրս գցած ու հեռադիտակը վզից կախած լուսանկարվում, ընկերներս այս պահին ճամպրուկները էին դասավորում, որպեսզի վաղը Ծաղկաձոր մեկնեն, իսկ իմ հորեղբորորդի Զավենն ինձ ձեռքերի վրա բերել ու պառկեցնում էր թախտին:

Ոլորված ոտքս ցավում էր թաց ու ցեխոտ գուլպայի մեջ, իմ հորեղբորորդի Զավենի կինը բարձ էր դնում մեջքիս տակ, մայրս առջևս չոքած հանում էր գուլպաներս, ու բոլորն էլ տեսնում էին, որ ոտքս ոլորվել է և ուռել: Մայրս շոշափում էր կոճս, իսկ ես ցավից կնճռոտվում էի ու տնքում, իմ հորեղբորորդի Զավենի կինը ասում էր. «Թաց շոր դնենք, չի ուռչի», մայրս բարկանում էր բոլորի ու ինձ վրա, հայրս մեղավոր ժպտում էր, իսկ իմ հորեղբորորդի Զավենը վերնաշապիկն էր խրում անդրավարտիքի մեջ:

Մայրս ասաց. «Զորս կողմից վրա էիք տվել երեխային, հո չէր ուտելու ձեր հեռադիտակը», ու ես գտա, որ նա իրավացի է, հորեղբորս որդու կինը օգնում էր նրան հանելու ցեխոտ վերնաշապիկս, իսկ ոտքս գնալով ավելի էր ցավում ու ուռչում, ու երբ մայրս այդպես ասաց, իսկ տատս ծնկանը խփելով, կրկնում էր. «Աչքերս քոռանան, կորչեր, կորչեր էդ հեռադիտակը», ես հանկարծ հասկացա, որ վաղը չեմ կարողանալու Ծաղկաձոր մեկնել: Բայց տխրելու հետ միասին ես նաև ուրախացա, ինձ սկսեց դուր գալ այն միտքը, որ դարձել եմ անարդարության զոհ, և բոլորն էլ տեսնում են, որ իրենց պատճառով է ոտքս վնասվել, որ իրենց պատճառով չեմ կարողանալու Ծաղկաձոր մեկնել, և ինձ դուր էր գալիս, որ տառապում եմ վիրավորանքից ու ցավից. և բոլորն էլ տեսնում են, թե ինչպես եմ տառապում ու դիմանում, և ինձ դուր էր գալիս, որ տառապած եմ, թեք եմ ընկել թախտին և վիրավոր ոտքս պարզել մորս:

Ինչպես քիչ առաջ այգում, այնպես էլ հիմա հանկարծ հայրս ծիծաղեց: Եվ ինչպես քիչ առաջ, այնպես էլ հիմա, ես նրա տեղից ու նրա աչքերով նայեցի ինձ, և այս անգամ էլ տեսա, որ նա իրավացի է, որ այդպես կիսամերկ, թախտին թեք ընկած, մեծամիտ տեսքով ոտքս ցուցադրաբար մորս պարզած, իմ հանդիսավոր տառապանքի մեջ միայն ծիծաղելի եմ և ուրիշ ոչինչ: Եվ ինչպես քիչ առաջ այգում, այնպես էլ հիմա իմ ծիծաղը չեկավ, բայց այս անգամ ինձ սկսեց խեղդել փղձուկը:

Ես լաց էի լինում, բայց ոչ թե նրա համար, որ իմ հորեղբայր Արշակը հեռադիտակը վիզը գցած լուսանկարվել էր անտառի ու վրանների ֆոնի վրա 1929 թվականին, իսկ ես 1973 թվականին այդ չէր կարողանալու անել, ոչ թե նրա համար, որ ոտքս գնալով ավելի շատ էր ցավում ու ուռչում, ոչ թե նրա համար, որ ընկերներս այս պահին ճամպրուկները էին դասավորում, որպեսզի վաղը ճամբարում լինեն, իսկ ես մեկ տարով հրաժեշտ էի տալիս Ծաղկաձորում հանգստանալու երազանքիս, այլ որովհետև հորեղբորս որդու կինը փորձում էր երկրորդ բարձը դնել մեջքիս տակ, ինչ է թե ավելի հարմար թիկնեմ,

digitised by A.R.A.R.@

մայրս փորձում էր հանել ցեխոտ շալվարս, տատս ափերի մեջ էր առել գլուխս և փորձում էր համբուրել, իսկ իմ հորեղբորորդի Զավենը մաքրել, արբել էր ցեխոտված հեռադիտակը, և հիմա փորձում էր ձեռքս տալ ու կրկնում էր. «Այսօրվանից քոնն է, քեզ եմ նվիրում»: Ես լաց էի լինում ամոթից, որ աչքացի եմ տալիս, չեմ թողնում շալվարս հանեն, և ցեխը քսվում, տարածվում է թախտի վրա, չեմ թողնում բարձը դնեն մեջքիս տակ, գալարվում եմ, գլուխս ազատում տատիս համբույրներից և հրում ու գցում եմ հեռադիտակը:

— Բավակա՛ն է,— ասաց հայրս:

Այո, ես լաց էի լինում ամոթից, բայց ոչ թե նրա համար, որ այս տեսքով ու իմ դիմադրությամբ իսկապես ծիծաղելի էի, այլ նրա համար, որ նախանձել էի իմ հորեղբայր Արշակին, որ չէի ուզեցել հասկանալ, թե ինչու էր նա ժամանակին գիշերով վարունգ թոցրել, որ երբ տատս ցույց էր տալիս նրա լուսանկարն ու ասում՝ «Տես, ինչ սիրուն տղա էր Արշակս», մտքումս նրան բոլորովին էլ սիրուն չէի համարում, որ համարձակվել էի տառասխալ տեսնել ռազմաճակատից գրած նրա վերջին նամակներում, և վերջապես, որ իմ հորեղբորորդի Զավենին հաջողվեց հեռադիտակի կաշեփոկը փիզս անցկացնել:

— Բավակա՛ն է,— այս անգամ չոր ու օտար ձայնով ասաց հայրս,— վե՛րջ տուր:


Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ԻՆՉՊԵՍ ՆԵՐՔԱՇՎԵՑԻ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՐՋԸ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ



Իմ առաջին պատմվածքը «Պիոների» նախահայրը՝ «Պատկոմն» է տպագրել:

Այն ժամանակ ես աշխատում էի «Ավանգարդ»-ում: Խմբագրությունները տեղավորված էին Ներկայիս Սվերդլովի փողոցի № 2 շենքում, որի տակ այժմ հանքային ջրերի խանութն է:

Երիտասարդական մամուլին հատկացված էր ընդամենը մեկ սենյակ, ուր տեղավորված էին «Ավանգարդը», «Երիտասարդ բոլշևիկ» ամսագիրը և «Պատկոմը»:

Ես խմբագրություն էի բերել իմ թարմ տպավորությունները լեռներից, որսորդների ու տավարածների կյանքից: Բերել էի նաև լեռնականի իմ սովորությունները: Օրինակ, փռշտում էի ինչպես մեր սարերում, այնպես դղրդոցով, որ հարևան սենյակից, ուր տեղավորված էր «Մաճկալի» խմբագրությունը, ներս էր մտնում Խնկո-Ապերն ու «Նախատում».

— Ադա, դու Մսրա-Մելի՞քն ես, ի՞նչ է…

Կամ՝

— Չոբան,

Գնա քո օբան…

Եվ ահա այդ երեկվա «չոբանը», որ նեղվում էր քաղաքի կյանքից և շատ էր կարոտել իրենց սարերին, իր որսորդական կյանքից դրվագներ էր պատմում ընկերներին ու երևակայությամբ նրանց փոխադրում Բազումի վեհապանծ լեռներն ու կուսական անտառները:

Մի անգամ էլ ոգևորված պատմեցի այն մասին, թե ինչպես տասնհինգ տարեկան հասակում առաջին անգամ արջաորսի գնացի անվանի որսկան Շաքարի հետ:

...Իմ ընկեր Վաղոն բարձրացավ ժայռի ճակատին սևին տվող անձավը, կրակեց նրա խորքում ու ետ փախավ: Խորքում քուն մտած արջը արթնացավ դղրդոցից, գայրացած դուրս վազեց որջից ու գրկեց իր քունը հարամողին: Այդ ժամանակ ես, որ թաքնվել էի ծառի հետևը, վայնասուն բարձրացրի. «Շաքար ամի՜, արջը Վաղինակին կերավ», ու կրակեցի գազանի վրա: Ժայռի կատարին



digitised by A.R.A.R.@

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՍԱՐԳԻՍ ՊԱՊԻ ԹՈՌՆԻԿՆԵՐԸ

*Գորիսի № 5 դպրոցի պիոներները «Մի՛շտ պատրաստ» երթի ուղղությամբ շատ ուշագրավ գործեր են կատարում: Նախադպրոցականներին ու ցածր դասարանցիներին երգեր, պարեր ու բանաստեղծություններ են սովորեցնում, զբոսանքների տանում: Իսկ չորրորդ դասարանցիները իրենց թատերական խմբակի ուժերով ներկայացումներ են տալիս նրանց համար: Եթե ավելի փոքր տարիքի դերակատարների կարիք է զգացվում, անպայման նրանց էլ են ընդգրկում խմբակի մեջ:*

*«Աստղիկ» երթուղին միակը չէ: Պիոներս․ ը՛ ․․րջ ուշադրություն են դարձնում բոլոր երթուղիներին, իսկ նոր ավելացածներից «Գեղեցիկի աշխարհում» ու «Թիմուրականը» ուղղակի թելադրեցին, թե է․ ինչ հետաքրքիր գործեր կարելի է ձեռնարկել:*

*Դպրոցից բավականին հեռու ապրում է Սարգիս պապիկը: Նա բոլորովին միայնակ է: Մի օր ջոկատավար ընկեր Կիման պիոներներին պատմեց այդ մասին և ասաց, որ նրան օգնել է պետք: Առաջին այցելությամբ Անահիտը, Ալվինեն, Կարմենն ու մյուսները այնքան էլ մեծ օգնություն չկարողացան ցույց տալ. Միայն տունը մաքրեցին, բակը կարգի բերեցին ու վերադարձան: Երբ գարունը բացվեց Գորիսի գեղատեսիլ լեռնաշխարհում, պիոներները բահերով զինված, հայտնվեցին Սարգիս պապի տնամերձում և մի քանի ժամում հողամասը մշակեցին, ծառերի շուրջը փոսեր փորեցին, բանջարեղենի համար մարգեր պատրաստեցին ու գնացին:*

*Չոր ու դաժան ամռանը, չնայած արձակուրդներ էին սկսվել, պիոներները անուամենայնիվ չմոռացան պապիկին: Հերթով հողամասը ջրեցին, ավելորդ ու վնասակար բույսերը քաղհանեցին: Պապիկը ջերմությամբ ու սիրով էր դիմավորում նրանց, կատակում էր, երջանիկ ու գոհ հետևում դպրոցականների աշխատանքին:*

*Ուշ աշնանը պիոներական ջոկատը նորից այցելեց Սարգիս պապին: Այս անգամ նրանք ծմռան հա-*

---

թառած որսկանը ձեռքի նշանով սաստեց ինձ, նշան բռնեց արջի գլխին ու կրակեց: Վաղոն ու արջը միասին ցած ընկան ժայռից ու իրար փաթաթված գլորվեցին անդունդը… Չիմացա գնդակը արջի՞ն կպավ, թե՞ Վաղոյին: Ժայռի գագաթից հանգիստ իջավ ծեր որսկանն ու թավ բեղի տակ ժպտալով, ասաց.

— Ա՛ պուճուր, վայնասուն մի բարձրացնի, որսկան Շաքարը գիտի իր գնդակի ճամփան…

Այս էր պատմությանս կարճ բովանդակությունը: Բայց ես ոգևորվել էի, պատմությունս, ըստ երևույթին, դուրս էր եկել հյութեղ և գունագեղ:

Դիմացի սեղանի հետև նստած մի խոհուն և քչախոս պատանի կար՝ «Պատկոմի» պատ. քարտուղար Հրաչ Միրզոյանը: Ուշադիր լսեց և երբ վերջացրի, մագաղաթի նման կոշտ ու երկար թղթեր դրբեց առաջս ու պատվիրեց.

— Գրիր… Ինչ որ պատմեցիր, նույնությամբ գրիր…

Շփոթվեցի, շառագունեցի:

— Ես հո գրող չեմ, որ գրեմ,— կմկմացի ես:

— Ինչպես որ պատմեցիր, այնպես էլ գրի… դա պատրաստի պատմվածք է: Գրողները երկընքից չեն ընկնում,— մյուս սեղանից խրախուսեց «Ավանգարդ»-ի պատ. քարտուղար Ռաֆայել Աթայանը, որի խոսքն ինձ համար հեղինակություն էր: Ուստի սրտապնդված սկսեցի, հենց երեք խմբագրությունների ժխորի մեջ: Մեքենագրուհի չունեինք, ձեռագիրս ուղարկեցին տպարան, և մեկ-երկու շաբաթ անց, ես «Պատկոմում» տեսա իմ առաջին պատմըվածքը. «Արջի ճանկերում»: Այնքան ուրախացա, որ այդպիսի ուրախություն չեմ զգացել հետագայում, նույնիսկ հաստափոր հատորներս լույս տեսնելիս: Ահա այդպես «Պատկոմը» ինձ ներքաշեց գրականության մարզը: Ես էլ որպես երախտիքի նշան, չեմ դավաճանում նրան և ահա 46 տարի է անընդմեջ աշխատակցում եմ իմ սիրելի «Պիոներին»:



digitised by A.R.A.R.@

*մար բերված փայտը ջարդեցին, դասավորեցին, որ նա հեշտությամբ կարողանա օգտվել:*

*— Եթե ոչինչ էլ չանեն, նրանց երևալը միայն մեծ ուրախություն է ինձ համար,— ասում է Սարգիս պապն ու ժպտալով ավելացնում.— Տունը լցվում է ուրախ աղմուկով: Նրանց գնալուց հետո էլ, կարծես, մնում է այդ աղմուկը, և մենակությունն այնքան էլ տաղտկալի չի լինում:*

## ԳԵՂԵՑԻԿ ՄԱՐԶԱՁԵՎԻ ՄՈՒՏՔԸ ԵՐԵՎԱՆ

Արդեն մեկ տարի է, ինչ Երևանի մասնագիտացված մարզադպրոցում գործում է ձևավոր չմըշկասահքի բաժինը:

Այս տարվա հունվարին չմշկասահորդների համար արհեստական սահադաշտ պատրաստվեց, Մոսկվայից և Կիևից մարզիչներ հրավիրեցին: Փետըրվարի 1—10-ը մարզադպրոցում կատարվեց մասսայական ընդունելություն:

Ձևավոր չմշկասահքի բաժինը նախատեսված է երեք տարեկանից բարձր և դպրոցական տարիքի երեխաների համար: Բայց ընդունելության քննությունների հաջող ընթացքի վրա կարող են հույս ունենալ նրանք, ովքեր արտաքին անթերի տվյալների հետ ունեն երաժշտական լավ լսողություն:

Ստեղծված են հինգ խմբեր ըստ տարիքային առանձնահատկությունների: Նախադպրոցական տարիքից մինչև վեցերորդ դասարանում սովորողները կարող են ընդգրկվել մենապարողների կամ զուգապարողների մարզական խմբերում, իսկ 6—10-րդ դասարանցիները՝ պարային խմբերում (բալետ սառույցի վրա): Պարապմունքները երկհերթ են:

Շուտով «Հրազդան» կենտրոնական մարզադաշտի մոտ կառուցվելու է մարզական թեքումով հանրակրթական դպրոց, բոլոր անհրաժեշտ հարմարություններով: Այստեղ հիմնականում կսովորեն այն պատանիներն ու աղջիկները, ովքեր լավ մարզիկներ դառնալու տվյալներ կունենան: Դպրոցը կհեշտացնի նաև պատանի մարզիկների գործը՝ կխնայի ժամանակը, որովհետև երեխան երբեմն ավելի շատ ժամանակ է վատնում ճանապարհների վրա, քան՝ պարապմունքների:

*ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ*


Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 9 սեպտեմբեր 1973 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

ԵԿ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 09163: Պատվեր՝ 902: Տպաքանակ՝ 79900: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 13/IX 1973 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան—9, Տերյան փ. № 91:






digitised by A.R.A.R.@

